## Շէյխ Ֆախրի եւ 14 մեծաւորներ սպաննուած

« Թայմզ »ի Թղթակիցը Պոլսէն կը հեռագրէ թէ Թուրք ոստիկան – զինուորները սպաննած են շէյխ Սայիտի հետեւորդներէն շէյխ Ֆախրի եւ ուրիշ 14 Քիւրտեր, որոնք ապստամբութիւններ կը կատարէին արեւելեան սահմանագլուխին վրայ։

## Գերմանիա գաղթավայր կը պահանջէ

Գերմանիոյ Գաղթային Ընկերութիւնը նոյ. 28ին երեկոյթ մը սարքած էր Պերլինի համալսարանի ուսանողներուն համար։ Ներկայ էին ոչ միայն ուսանողները, այլեւ Պուլկարիոյ նախկին Թագաւորը՝ Ֆէրտինանտ, Մէքլէնպուրկի դուքսը, արտաքին, ներքին եւ պրոպագանդի նախարարութեանց ներկայացուցիչները։

Փրոֆ. Զիման բացման ճառը խօսեցաւ, պահանջելով « տարածութիւն՝ գերման երիտասարդութեան համար »։ Շեշտեց թէ երիտասարդութեան ամէնէն առիպողական պահանջն է գաղթավայր։ « Պէտք չէ հրաժարիլ գաղթավայրերը ետ ստանալու պահանջէն։ Ցետոյ, պէտք է միայն լաւագոյն տարրերը ղրկել, ինչպէս կ'ընէ Անգլիա »։

Տոքթ. Շնի, Արեւելեան Ափրիկէի գերմանական գաղթավայրին կառավարիչը, պարզեց գաղթային ստացուածքներու տնտեսական եւ նիւթական անհրաժեշտութիւնը, մանաւանդ նկատի առնելով Գերմանիոյ ժողովուրդին չափազանց խճողումը։ « Գաղթավայրերու վերստացումը միեւնոյն ատեն պատիւ եւ իրաւահաւասարութեան խնդիր մըն է մեզի համար »։

Խօսեցաւ նաեւ Փրուսիոյ Հերպերթուս իշխանը, տեղեկութիւններ տալով Ափրիկէի մէջ կատարուած պտոյտներու մասին։

## Սեւամորթ մը եւս վառեցին

Ամբոխային խժդժութիւնները իրարու կը յաջորդեն Մ. Նահանգներուն մէջ։

Անցեալ օր պատմեր էինք թէ ինչպէս 10,000 հոգինոց բազմութիւն մը Սան Ճոզէի (Քալիֆորնիա) բանտէն հանելով, քաշկռտած եւ ծառէն կախած էր երկու բանտարկեալներ։ Այս առթիւ կառավարիչը հազարաւոր... շնորհաւորական հեռագիրներ ստացաւ։

Ահա նոր դէպք մը.— Սէյնթ Ճոզէֆի մէջ (Միսուրի), սեւամորթ երիտասարդ մը, որ ամբաստանուած էր թէ սպիտակամորթ աղջիկ մը պղծած է, բանտէն հանուելով ողջ ողջ այրուեցաւ։ Ամբոխը, 8000 հոգի, իր կարգին արտասովոր կազ գործածեց ոստիկանութեան դէմ։ Ցետոյ խոշոր բեռնակառք մը քշելով բանտին վրայ, խորտակեց դուռը եւ դուրս հանեց բանտարկեալը։ Նախ փորձեցին կախել, բայց չյաջողելով, կազ լեցուցին եւ վառեցին...

### ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻԱՆ ԱԼ ՊԻՏԻ ՃԱՆՉՆԱՅ

Պերլինէն կը հեռագրեն թէ՝ Չեխոսլովաքիան ալ կը պատրաստուի ճանչնալ խորհրդային իշխանութիւնը։ Հաւանական է որ Լիթվինովի վերադարձէն յետոյ՝ Պ. Պէնէշ Մոսկուա երթայ։

### ՑՈՅՑ ՄԸ ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԴԵՍՊԱՆԱՏԱՆ ԴԷՄ

Երեքշաբթի օր 150 ցուցարարներ համախմբուելով Փարիզի գերմանական դեսպանատան առջեւ թշնամական աղաղակներ արձակեցին, քարեր եւ «մինիօմ»ով լեցուած շիշեր նետեցին շէնքէն ներս։ Ոստիկանութիւնը յանցանքի վրայ բռնեց երկու Ֆրանսացի ցուցարարներ, իսկ չորս օտարականներ անկանոն թուղթ ունենալով, հսկողութեան տակ առնուեցան։

### ԵՐՐՈՐԴ ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԻՒՆԸ ԴԵԿՏ. 19ԻՆ

Ազգ. Վիճակախաղի Կազմակերպիչ Մարմինը ձեռնարկած է 7րդ շերտի տոմսերու տպագրութեան, որ հրապարակ պիտի հանուի դեկտ. 11ին։ Ութերորդ տպագրութիւն մըն ալ պիտի հանուի դեկտ. 19ին, երբ տեղի կ'ունենայ երրորդ վիճակահանութիւնը։

---

Հ. Յ. Դ.

## Փարիզ եւ արուարձաններ

ՓԱՐԻԶԻ Հրազդան, Ազբիւր Սերոբ եւ Քրիստափոր միացեալ խումբերու ժողովը այս Երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին 32, Avenue Goblinsի սրճարանին վերնայարկը։

### Գաւառ

ԼԻՈՆԻ կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

ԼԻՈՆԻ կոմիտէին դասախօսական ժողովը այս երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին։ Կը հրաւիրուին ընկերներ եւ համակիրներ։ Կը դասախօսէ՝ ընկեր Աշոտ Խաչիկեան։

ՎԻԷՆԻ Կոմիտէն ընդհ. ընկերական ժողովի կը հրաւիրէ իր շրջանի երեք խումբերու բոլոր ընկերները, այսօր ուրբաթ իրիկուն ժամը ճիշդ 8ին «Խաժակ» Ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։ Կը խնդրուի բոլոր ընկերներէն ներկայ ըլլալ ճիշդ ժամանակին։ Կը խօսի՝ ընկ. Աշոտ Խաչիկեան։

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Պատ. Միութեան Կեդր. Վարչութիւնը ստիպողական խառն ժողովի կը հրաւիրէ Քաղաքի, Պուլվար Օտտոյի եւ Սէն Լուիի ընկերները վաղը Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին Գրադարանի մէջ։

ՄԱՐՍԷՅԼԻ « Իշխան » Ենթակոմիտէն՝ ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, վաղը, շաբաթ երեկոյ ժամը 8ին, սովորական հաւաքատեղին։

Ներկայանալ անդամատետրով։ Պարտաւորիչ ներկայութիւն։

ՍԷՆ Թ'ԷԹԻԷՆԻ Կէփին խումբի ժողովը վաղը շաբաթ երեկոյ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼԻ «Իշխան» Ենթակոմիտէն եւ ընկերները իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն ընկեր Մելտոնեանի իր հօր դառնաղէտ մահուան առթիւ։

ՄԱՐՍԷՅԼԻ «Իշխան» Ենթակոմիտէն եւ ընկերները իրենց ցաւակցութիւնը կը յայտնեն ընկեր Օննիկ Աւետիսեանի (Հաճի) դառնաղէտ մահուան առթիւ, իր այրիին եւ զաւակներուն։

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Վրէժ խումբի ընկերները իրենց ցաւակցութիւնը կը յայտնեն ընկեր Ստեփան Մելտոնեանի եւ ընկեր Յակոբ Մելտոնեանի եւ պարագաներուն իրենց հօր դառնաղէտ մահուան առթիւ։

**Փարիզի Գրական Ակումբ** վաղը Շաբաթ իրիկուն, ժամը 9ին, 131, rue Paul Berruel (Նախկին rue Cambronne, 131) métro Vaugirard տեղի կ'ունենայ Գր. Ակումբի ընդհանուր ժողովը, կը հրաւիրուին Գրական Ակումբի անդամները։ Եթէ առաջին ժողովը մեծամասնութիւն չունենայ, նոյն իրիկուն ժամը 9.30ին տեղի կ'ունենայ երկրորդ հրաւիրուած ժողովը, համաձայն կանոնագրութեան՝ անկախ ներկայ գտնուող անդամներու թիւէն։ Օրակարգ՝ Նոր անդամներու ընդունելութիւն, զեկոյց վարչութեան եւ նոր վարչութեան ընտրութիւն։

## Թէյասեղան Լիոնի մէջ

ԸՆԿԵՐ Ս. ԶԱՒԱՐԵԱՆԻ ՄԱՀՈՒԱՆ 20ԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին Զարդարեան Գրադարանին մէջ կը հրաւիրուին ընկերներ եւ համակիրներ։

Ներկայ կ'ըլլայ ընկեր Աշոտ Խաչիկեան։

---



Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme :-: PARIS (13e)

դաշնագրի մը մասին որ ուղղուած ըլլայ Պուլկարիոյ դէմ, որովհետեւ այդ պիտի հակասէր իր քաղաքականութեան որ կը ձգտի վերահաստատել վստահութիւնը եւ խաղաղութիւնը Պալքաններու մէջ, դիւրացնելու համար Պալքանեան պետութեանց միջեւ առկախ մնացած խնդիրներու լուծումը: Ոչ ոք կը ժխտէ Պուլկարիոյ իրաւունքը, պայքարելու եւ ստանալու համար իրեն եղած խոստումները: Այս նպատակին համար կան միջազգային իրաւարարութիւնը եւ Ազգերու Դաշնակցութիւնը: Օրինակ, երբ Պուլկարիան դէպի Եգէական ծով ելքի խնդիր յարուցանէ, ինչպէս նախատեսուած է Նէօյիի դաշնագրով — ելք մը որ զուտ տնտեսական է և ոչ հողային — ես յանձն կ'առնեմ ուժգնօրէն միջամտել յունական կառավարութեան մօտ, որպէսզի գործադրուի այս յանձնառութիւնը: Յունական կառավարութիւնը չի մերժեր բանակցիլ այսպիսի հիման մը վրայ:

*Խօսելով Պ. Մուշանովի հետ եղած տեսակցութեան մասին, Թէվֆիք Րիւշտի պէյ ըսաւ թէ կ'ուզէր տեսնել վարչապետը, բացատրելու համար Թուրքեւերուկոսլաւ դաշինքին իմաստը եւ կրկին հաւաստելու թէ այդ դաշինքը, ինչպէս եւ Յունաստանի հետ կնքուած դաշնագիրը երբեք չեն փոխեր Թուրքիոյ բարեկամութիւնը՝ Պուլկարիոյ հանդէպ: Աւելցուց թէ Պելկրատի մէջ անհամբեր կը սպասեն Պուլկարիոյ Թագաւորին այցելութեան եւ թէ Սերպերը յայտնապէս կ'ուզեն համաձայնիլ Պուլկարներուն հետ:*

### ՖՈՒԹՊՈԼԻ ՄԵԾ ՄՐՑՈՒՄ ՄԸ ՍԿՈՎՏԻԱՑԻՆԵՐՈՒ ԵՒ ԱՒՍՏՐԻԱՑԻՆԵՐՈՒ ՄԻՋԵՒ

Ամիսներէ ի վեր սպասուած ֆութպոլի մրցումը տեղի ունեցաւ Չորեքշաբթի օր, Սկովտիոյ մէջ, Աւստրիացիներու եւ Սկովտիացիներու միջեւ: Ներկայ էին 68,000 հոգի: Երկու կողմերը լաւ խաղարկութիւն մը ունենալէ յետոյ, հաւասար մնացին 2 — 2ով:

Ամբողջ եւրոպակա մամուլը, մանաւանդ անգլիականը գովեստով կը խօսին Աւստրիացիներու մասին:

*ՎԵՑ ՀԱՄԱՅՆԱՎԱՐՆԵՐ ԳԼԽԱՏՈՒԵՑԱՆ* Քէօլնի բանտին մէջ, հինգշաբթի առտու, կրակ բրած ըլլալով հիթլէրականներու դէմ:

*Պ. ԼԻԹՎԻՆՈՎ* Հռոմ կը հասնի այսօր, տեսակցելու համար Պ. Մուսոլինիի հետ: Քաղաքական շրջանակներու մէջ մեծ կարեւորութիւն կուտան այս այցելութեան:

*ՀՐԵԱՅ ԱՌԵՒՏՐԱԿԱՆ* մը 900,000 փրանք պահելով իր ինքնաշարժին մէջ, կը փորձէր փախչիլ Գերմանիայէն, երբ ձերբակալուեցաւ սահմանագլուխին վրայ: Մանհայմի մէջ ալ ձերբակալուեցան երեք հրեայ առեւտրականներ, իրենց մեղսակից:



### ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ

*Այրի Տիկին Կիւլիզար Աւետիսեան եւ զաւակները շնորհակալութիւն կը յայտնեն Հ. Յ. Դ. Եւր. Կեդր. Կոմիտէին, Հ. Յ. Դ. Վարդան Կոմիտէին, Հրայր եւ Ռազմիկ խումբերուն, ընկերներու, Տր. Կ. Խաչի, Հայ Արիներու եւ ամէն անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն եւ հօր՝*

*ՕՆՆԻԿ ԱՒԵՏԻՍԵԱՆի* (Հաճի)

*դառնաղէտ մահուան առթիւ*

Մարսէյլ, 27 նոյ. 933

### Ա. Զ. Դ.

Լիոնի եւ շրջակայից Հայ հասարակութեան առ ի գիտութիւն կը ծանուցանենք թէ կաթողիկոսական քննիչ - պատուիրակ՝ Գեր. Տ. Երուանդ եպիսկ. Փէրտահճեան հանդերձեալ է Ս. պատարագ մատուցանել, վաղը կիրակի դեկտեմբեր 3, Լիոնի Ս. Աստուածածին եկեղեցւոյ մէջ՝ 75 Ավընիւ Պէրթըլօ, Լիոն: Կը հրաւիրուի Լիոնի եւ շրջակայից հայ հասարակութիւնը, անպայման ներկայ ըլլալ ու մխիթարուիլ հոգեւորապէս:

Սկզբնաւորութիւն ժամերգութեան՝ ժամը 7.30ին, Ս. պատարագ ժամը 9.30ին, քարոզ ժամը 11ին:

(*Կնիք*)

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տօնապետեան եղբայրք եւ պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն ազգականներու, բարեկամներու եւ ընկերներու, որոնք անձամբ, ծաղկեպսակով եւ նամակաւ ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրելի մօր, քրոջ եւ հօրաքրոջ՝

ՏԻԿ. ՇՈՒՇԱՆ ՏՕՆԱՊԵՏԵԱՆի

(*Խարբերդի Մուզուր օղլու գիւղէն*)

դառնաղէտ մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ 9 նոյեմբեր, 1933:

*ՍԷՆ ԹԻԷԹԻԷՆԷՆ ցէր եւ Տիկին Կարապետ Խրիմեան մէկ տարեկան «ՎԷՄ» կը նուիրեն իրենց եղբօր Պ. Միհրան Խրիմեանի (Պէյրութ),*



*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

## ԿԵԱՆՔ ԵՒ ԱՐՈՒԵՍՏ

ՏԱՐԵԳԻՐՔ Դ. ՏԱՐԻՆ

1934

ԴԻՄԵԼ՝ **M. & M. Barsamian.**

**94, Rue Lafayette. Paris (10)**

ԳԻՆ՝ 25 *ՖՐԱՆՔ ԱՄԷՆ ՏԵՂԻ ՀԱՄԱՐ*



**Le Gérant : H. STEPHAN**

**Imprimerie A. DER (AGOPIAN)** **17, Rue Dameame :-: PARIS (13e)**

Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme — PARIS (13e)

րութեան նպատակները, եւ չնչտեց.— «Մենք պէտք գործենք ազգին մէջ՝ ազգին համար»:

Ուրիշ բանախօսներ ալ շեշտեցին թէ անհրաժեշտ է հետեւիլ երիտասարդ քաղաքականութեան մը, գործի քաղաքականութեան մը, եւ վերահաստատել ազգային համերաշխութիւնը «որ անպատճառ ազգայնականութիւն չի նշանակեր»: Պատուիրակ մը վախ յայտնեց թէ կրնան քօղարկեալ փաշականութեան մը յանգիլ: Պ. Մառքէ զիտել տուաւ թէ դասակարգի ըմբռնումը կը նմանայ ազգի ըմբռնումին առջեւ: «Մենք յենարան կրնանք գտնել միայն ազգային բնազդին մէջ: Կարգ – կանոն, հեղինակութիւն եւ ազգ,— ահա մեր ըմբռնումը»:

Ետոյ վաւերացուեցաւ կեդր. վարչութեան ընտրութիւնը:

---



---

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ԳՈՅԱՄԱՐՏ *Օրացոյց 1934 Ե. Տարի*

*ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Պատանեկան Միութեան «ԳՈՅԱՄԱՐՏ» օրացոյցը Ե. Տարի, նուիրուած իր Տասնամեակին, ազգային եւ կրօնական տօներով եւ մօտ 40 նկարներով, արդէն սպառելու մօտ է: Զրկուելու համար այդ գեղեցիկ գործէն աճապարեցէք դիմելու՝* *Karnig Antikian, 49, rue Nationale, Marseille.*

*Կը ծախուի նաեւ՝*

փարիզ եւ արուարձաններ՝ Գրատուն Հրանտ-Սամուէլ, *51, rue Mr. le Prince, Paris (5):*

Լիոն եւ Տէսին, վաղան Հիւսեան, *3, rue Tellier. Décines:*

վալանս, ղազար Գալուստեան, *10, rue 14 Cantons.*

վիէն, Ներսէս խաչիկեան, *124, rue Lafayette:*

Լուարի շրջան, վարդան խրիմեան *34, rue des Frères Chappe. St. Etienne:*

կրէնոպլը, կ. Գապաքճեան.

կարտան, Լեւոն Գայաճանեան:

Նիս, Գեղամ Շէհիրեան, 182, *Bld. de la Madeleine.*

Աղեքսանդրիա, Ներսէս Ղազիկեան Գրատուն:

Աթէնք, Գրատուն «Նոր Օր».

Հալէպ, խորէն Գըրգ-քեսէլեան, 22, *rue Boustan Kulak:*

Գոնսթանցա (Ռումանիա), Արմենակ Կարապետեան.

Պէյրութ Գրատուն Ապաճեան եղբայրներու *B. P. 870:*

Պէյրութ, Գրատուն խորէն Ազնաւորեան, *rue Bab-Yacoub.*

Պաղտատ, Աղաճան Սահակեան, *Hinaidi:*

Պաղտատ, Գլխարկավաճառ Աւետիս Ասլանիկեան.

Ինչպէս նաեւ Մարսէյլի շրջանի Պատ. Միութիւններու եւ դաշնակցական բոլոր ընկերներու մօտ.

*ԾԱՆՕԹ.— Տպարանական սխալով կողքի 4րդ նկարներու անունները սխալ գրուած են. Գայլ Վահանինը ըլլալու է Զուլամաթ, իսկ Զուլամաթինը՝ Գայլ Վահան.*

---

### ԿԱՆԽԻԿ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

»»» · «««

( «ՅԱՌԱՋ»Ի ՀԱՒԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԱԽԱՂԻՆ ՄԱՍՆԱԿՑԵԼՈՒ ԻՐԱՒՈՒՆՔՈՎ )

Տ Ա Ր Ե Կ Ա Ն

ՓԱՐԻԶ, Գրիգոր Հալէպեան 140:
ՔՈՒՐՊԸՎՈՒԱ, Վազգէն Անդրէասեան 140:
ԼԻՈՆ, Ներսէս Մոմճեան 140:
ՔԱՆ, Տիկ. Ա. Վահանեան 140:

Վ Ե Ց Ա Մ Ս Ե Ա Յ

ՊՕՊԻՆԻ, Սարգիս Աբրահամեան 70:
ՄԱՐՍԷՅԼ, Ա. Պէրպէրեան 70:(Գալուստ):
ՓԱՐԻԶ(5), Միհրան Գազանճեան 70:

Ե Ռ Ա Մ Ս Ե Ա Յ

ՓԱՐԻԶ, Մանուէլ Ոսկերիչեան 35:
ԱՐՔԷՕՅԼ, Հրանտ Նէմէնիճեան 35:
ՎԻԼ Տ'ԱՎՐԷՅ, Նասիպ Զաքարեան.— 35:

### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*Ս Տ Ա Ց Ա Ն Ք*

ՏԷՍԻՆ, ԳՈՐԾ.— 400 ֆրանք:
ՏԷՍԻՆ, Ն. Ե.— 50:
ԼԻՈՆ, Հ. Թատ. (Քէֆ.ի միջոցաւ) 50 ֆրանք:
ԹՈՒՆՈՒԶ, Վ. Եղ.— 120:
ՄԱՐՍԷՅԼ, Գործ.— 1055:
ԼԱ ԿՈՏԸՆԻԷՐ, Ն. Դ.— 35:
ԿԱԼԿԱԹԱ, Arm. Ch.— 171.50 (40 շիլին):
ԹՈՒՐ, Մ. Իսկէնտ.— 35:
ՍԱՎԻՆՆԻ ՍԻՒՌ ՕՐԺ, Պ. Գըլ.—50:
ԼԱՌՆԱՔԱ, Յ. Պ.— 1 անգ. 3 շիլ.: 1 եգիպ.:
ՄԷՕՏՕՆ, Բաբատ.— 50::
ԱՆԻԷՌ, Ն. Թոմ.— 35:
ՍԷՆ ՓԻԷՌ ՏԷ ՔՕՐ, Պ. Թոմ.— 105:
ՖՕՆԹԸՆԷՅ ՍԻՒՌ ՍՕՆ, Վ. Փափ.— 140:
ՓԱՐԻԶ, (14), Լ. Ե.— 70:
ՉԱՆ – ՉՈՒՆ, Մ. Թ.— 200: (Պ.ի միջոցաւ):
ՓԱՎԻՅԵՕՆ ՍՈՒ ՊՈՒԱ, Ա. Չըպ.— 70:
ԿԷԿՆՈՆ, Իճն.— 35:
ՍԷՆ ՊՐԻԷՕԿ, Խապ.— 35:
ՎԻՎԻԷ, Պ. Ք.— 35:
ՄԱՐՍԷՅԼ, Ս. Ապ.— 140:
ՍԷՆ ՍԱԹԻՒՐՆԷՆ, Լ. Օվ.— 35:
ԼԱ ՄԱՊՐԷԼ ՍԻՒՌ ՇՈՒԱԶԻԼ.— 40: 40:
ՊՈՒՐԿ ՍԷՆ Թ'ԱՆՏԷՕԼ, Սահ.— 40:
ՄԱԹԷԼ, Մ. Թ.— 105:
ԹՐԱՆՍ, Վ. Զատ.— 100:
ՓԱՐԻԶ (14), Տ. Բէկ.— 30:
ՎԱԼԱՆՍ, Գործ.— 278:
ԹՐԻԷՍԹԷ, Վ. Յ.— 250:
ՎԻԷՆ, Յ. Մ.— 140:
ՎԻՎԻԷ, Ա. Քէօշ.— 35:
ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊ, Վարդ.— 140:
ԱԼԷՍ, Մ. Կ.— 144:
ՄԱՐՍԷՅԼ, Ի. Թ.— 35:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Զ. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ Փարիզի մասնաճիւղին պարբերական դասախօսութիւնը այս Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին, Ֆլորիայի վերնայարկը: Կը դասախօսէ Պ. Մկրտիչ Պարսամեան: Նիւթ՝* գրական դէմքեր. *կը հրաւիրուին անդամներն ու փափաքողները:*

*ՓԱՐԻԶԻ Հայ Երիտասարդական Ակումբին առաջին հաւաքոյթը տեղի կ'ունենայ այսօր, Երեքշաբթի երեկոյ ժամը 9ին Salle Mutualitéի H սրահին մէջ: Métro Maubert-Mutualité: Կը խօսի Արմիկ Զամալեան: Նիւթ՝ Սկաուտիզմը միջազգային կեանքի մէջ:*



## "ՀՈԿՏԵՄԲԵՐ - ՆՈՅԵՄԲԵՐ"

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆԻ ՆՈՐ ԳԻՐՔԸ

(*ՏԱՐԵԳԻՐՔ*)

Գեղարուեստական հրատարակութիւն, նուիրուած Հայաստանի նուաճումներուն՝ գրականութեան, արուեստի, մշակութային, շինարարութեան եւ ժողովրդական տնտեսութեան ասպարէզին մէջ:

Տարեգիրքը կազմուած է՝ Ե. ՉԱՐԵՆՑԻ, ԱՔՍԷԼ ԲԱԿՈՒՆՑԻ եւ Ե. ՉՈՒԲԱՐԻ խմբագրութեամբ: Կը պարունակէ Հայաստանի գործիչներու կենսագրականները եւ ճոխացած է՝ Հայաստանի գործիչներու լուսանկարներով, թատերական բեմադրութիւններու, մշակոյթի կօթողներու եւ Հայաստանի ժողովրդի կենցաղը եւ կեանքը ներկայացնող պատկերներով:

Գիրքն ունի 658 էջ մեծադիր՝ լաթակազմ եւ գեղարուեստական կողք:

ԳԻՆ 15 ՄԱՐՔ

Ապսպրանքներու համար դիմել՝

«Knika» G. M. B. N. Kurfurstenstr. 33

BERLIN, W. 35 — ALLEMAGNE









Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) — 17, Rue Damesme :-: PARIS (13e)

կիներու համալսարանի մը մէջ տեսչուհին հետեւեալ քարոզը կարդաց իր աշակերտներուն.

— Դուք տարիներով տեսաք որ Ամերիկացիները գաղտնի կը խմեն վտանգաւոր ըմպելիները, քանի որ արգիլուած էր խմել բացայայտ, վայելչօրէն եւ չափաւորութեամբ: Դաս առէք այս իրողութենէն:

Այս առթիւ, դասընթացք մը բացուած է, «խմելու արուեստը» սորվեցնելու համար անոնց որ չեն գիտեր... Յատուկ հրահանգներ փակցուած են շիշերուն վրայ,— «Ճերմակ գինի խմեցէք ձուկին եւ ճերմակ միսին հետ, կարմիր գինի՝ կարմիր միսին հետ» եւայլն:

⁂ Փարիզի Ամերիկացիներն ալ գինարբուքներ սարքեցին «այս բարեբաստիկ առթիւ»: Երեկոյթի մը մէջ, որ տեւեց մինչեւ լոյս, մասնակցողներուն իրաւունք տրուած էր իրենց ուզածին չափ շամփանեա խմելու, փոխան 50 ֆրանքի:

## Պուլկարիոյ թագաւորը Պելկրատ կ'երթայ

Պուլկարիոյ Թագաւորը եւ Թագուհին Պելկրատ պիտի երթան այս շաբթու վերջը կամ յառաջիկայ շաբթուան սկիզբը: Իրենց պիտի ընկերանայ վարչապետը, բանակցելու համար երկու երկիրներու յարաբերութեանց մասին: Քաղաքական շրջանակներու մէջ մեծ կարեւորութիւն կ'ընծայեն այս այցելութեան, որ նախաբանն է Պուլկարիոյ եւ Եուկոսլաւիոյ մերձեցման:

## ՀԱՒԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԱԽԱՂ ՅԱՌԱՋի բաժանորդներուն համար

« ՅԱՌԱՋ » գնած է ՉՈՐՍ տոմսեր, Ֆրանսայի Ազգ. վիճակախաղէն:

Այս վիճակահանութենէն օգտուելու իրաւունք ունին բոլոր անոնք որ,

### 1933 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1ԷՆ ՄԻՆՉԵՒ ԳՆՈՒԱԾ ՏՈՄՍԵՐՈՒ ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԵԱՆ ՕՐԸ

1.— Նոր բաժանորդ կը գրուին ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ:

2.— Կը նորոգեն իրենց բաժնեգինը, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ:

Այսպէս, եթէ այդ չորս թիւերէն մէկը կամ աւելին պարգեւ շահին, ԱՐԴԻՒՆՔԻՆ ԿԷՍԸ (ՀԱՐԻՒՐԻՆ 50), ՊԻՏԻ ԲԱԺՆՈՒԻ ԱՅՍ ԿԱՐԳԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ, հետեւեալ համեմատութեամբ.—

| | |
|---|---|
| ՏԱՐԵԿԱՆ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 60 % |
| ՎԵՑԱՄՍԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 30 % |
| ԵՌԱՄՍԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 10 % |

ԱՅՍ ԱՌԻԹԷՆ ԿՐՆԱՆ ՕԳՏՈՒԻԼ ՆԱԵՒ ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԸ, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ ՏԱՐԵԿԱՆ կամ ՎԵՑԱՄՍԵԱՅ (եռամսեայ չունինք արտասահմանի համար):

### ԱՀԱ ՄԵՐ ԳՆԱԾ ՉՈՐՍ ՏՈՄՍԵՐՈՒՆ ՇԱՐՔՆ ՈՒ ԹԻՒԵՐԸ.-

### ՉՈՐՐՈՐԴ ՇԵՐՏԷՆ (4e tranche)

շարք **S** թիւ 99,412

շարք **T** թիւ 78,009

շարք **S** թիւ 99,413

շարք **D** թիւ 52,152

*ԾԱՆՕԹ*.— Վճարող եւ նոր արձանագրուող բաժանորդներէն անոնք որոնք չեն ուզեր իրենց անունը հրատարակել թերթին մէջ, կը ստանան համապատասխան ընկալագիր մը, նշանակուած տոմսերու թիւով եւ իրենց մասնակցութեան իրաւունքով:

## Հ. Յ. Դ.

*ՍԷՆ Թ'ԱՆԹՈՒԱՆԻ (Մարսէյլ) «Ընկեր Կարօ» խումբի ընկերական ժողովը այս Կիրակի երեկոյ ժամը 7ին ընկեր Ս. Գալուստեանի բնակարանին մէջ: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:*

## Ընկերային - թէյասեղան

կազմակերպուած Հ. Յ. Դ. *ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ ՎՌԱՄԵԱՆ* խումբին կողմէ իր հաստատման 5րդ տարեդարձին առթիւ

*Այս Կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին*

6bis, Bld. Rodin, *Իսի լէ Մուլինօ*

Հաղորդ. միջոցներ — *Փորթ Վէրսայլէն եւ Փորթ Օռլէօնէն առնել 32 եւ 23 թիւ հանրակառքերը եւ իջնել Կար տ'Իսի:*

## ԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած *ՀԱՅ ԱՐՒՆԵՐՈՒ ՄԱՐՍԷՅԼԻ* մասնաճիւղին կողմէ *Ի ՆՊԱՍՏ ՀԱՅ ԱՐՒՆԵՐՈՒ ՕՃԱԽԻ ԾԱԽՍԵՐՈՒՆ*

*16* դեկտ. Շաբաթ երեկոյ ժամը *8.45*ին Սալ Շարի մէջ. *84*, Բիւ Շաբ

*Ճոխ յայտագիր:* *Մուտք* 5 *ֆրանք:*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Զատրեան, Այրի Տիկին Զեվիկեան, Այրի Տիկին Գըլըճեան եւ զաւակունք շնորհակալութիւն կը յայտնեն ազգականներու, բարեկամներու եւ ամէն անոնց որոնք անձամբ, նամակաւ եւ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրելի հօր, ամուսնոյն, փեսին, քեռայրին՝

ՊՕՂՈՍ ՔԱՏՐՃԵԱՆԻ

( *Պոլսեցի* )

դառնակսկիծ մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ 1933 Նոյեմբեր 20ին, 33 տարեկան երիտասարդ հասակին մէջ:

*Մարսէյլ 1 Դեկտեմբեր 1933*

## ԿԱՆԽԻԿ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

»»» · «««

( «ՅԱՌԱՋ»Ի ՀԱՒԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԱԽԱՂԻՆ ՄԱՍՆԱԿՑԵԼՈՒ ԻՐԱՒՈՒՆՔՈՎ )

ՑԱՆԿ ԹԻՒ 3

ՄԱՐՍԷՅԼ, Ցարուհիւն Եաղնեան:

ՇԱՎԻԼ, Պատրիկ Պետեան:

ՎԻԼՄՈՆՊԼԸ, Նազարէթ Եկաւեան:

ՓԱՐԻԶ (4), Գրիգոր Թեւանեան:

ՄԻՐԱՄՈՆ, Սարեան Հաճի:

ՍԷՆ ԼՈՒ (Մարսէյլ) Երամիա Փամպուքեան:

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕ, Յովհաննէս Համբարեան:

ՓԱՐԻԶ (13), Թրավեսեան – Մանուկեան:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Մարսէյլի Հ. Յ. Դ. «Ընկեր Կարօ» խումբի ընկերները իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն ընկեր Պապիկ Տօնապետեանի՝ իր մօր դառնաղէտ մահուան առթիւ:*

## ԴԱՍԱԽՕՍ

*Զ. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ Փարիզի մասնաճիւղին պարբերական դասախօսութիւնը այսօր Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին, Ֆլորիայի վերնայարկը: Կը դասախօսէ Պ. Մկրտիչ Պարսամեան: Նիւթ՝* գրական դէմքեր: *Կը հրաւիրուին անդամներն ու փափաքողները:*

*ԵՈԶԿԱՏԻ եւ Շրջ. Հայր. Միութեան (Փարիզ) ընդհամական ժողովը տեղի կ'ունենայ այս Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին* 131, Fbg. de Temple: *Վիճելի եկած շրջաբերական ընթերցում, պատգամաւորի ընտրութիւն եւ վարչական խնդիրներ:*



Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme :-: PARIS (13e)

## Ենթակոմսերը եւ կողմնակալներ (?) սնանկացներ

Աւստրիոյ եպիսկոպոսները խորհրդաժողովը նկատի առնելով քաղաքական պայքարներու փափուկ հանգամանքը, որոշեց որ կղերականները քաշուին քաղաքական ասպարէզէն: Այն քահանաներն ու առաջնորդները որ քաղաքապետական, նահանգային եւ օրէնսդրական պաշտօններ ունին, պարտաւոր են քաշուիլ մինչեւ դեկտեմբեր 15: Այս թուականէն սկսեալ ոչ մէկ եկեղեցական պիտի կրնայ քաղաքական պաշտօն ստանձնել, առանց իր դահերէց եպիսկոպոսին արտօնութեան:

## ՅԱՒԵԼԵԱԿԱՆ ՎԻՃԱԿԱՀԱՆԱԴ
### ՅԱՌԱՋի բաժանորդներուն համար

«ՅԱՌԱՋ» գնած է ՉՈՐՍ տոմսեր, Ֆրանսայի Ազգ. վիճակախաղէն:
Այս վիճակահանութենէն օգտուելու իրաւունք ունին բոլոր անոնք որ,

**1933 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1ԷՆ ՄԻՆՉԵՒ ԳՆՈՒԱԾ ՏՈՄՍԵՐՈՒ ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԵԱՆ ՕՐԸ**

1.— Նոր բաժանորդ կը գրուին ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ:

2.— Կը նորոգեն իրենց բաժնեգինը, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ:

Այսպէս, երբ այդ չորս թիւերէն մէկը կամ աւելին պարգեւ շահին, ԱՐԴԻՒՆՔԻՆ ԿԷՍԸ (ՀԱՐԻՒՐԻՆ 50), ՊԻՏԻ ԲԱԺՆՈՒԻ ԱՅՍ ԿԱՐԳԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ, հետեւեալ համեմատութեամբ.—

| | |
|---|---|
| ՏԱՐԵԿԱՆ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 60 % |
| ՎԵՑԱՄՍԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 30 % |
| ԵՌԱՄՍԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 10 % |

ԱՅՍ ԱՌԻԹԷՆ ԿՐՆԱՆ ՕԳՏՈՒԻԼ ՆԱԵՒ ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԸ, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ ՏԱՐԵԿԱՆ կամ ՎԵՑԱՄՍԵԱՅ (եռամսեայ չունինք արտասահմանի համար):

**ԱՀԱ ՄԵՐ ԳՆԱԾ ՉՈՐՍ ՏՈՄՍԵՐՈՒՆ ՇԱՐՔՆ ՈՒ ԹԻՒԵՐԸ.-**

**ՉՈՐՐՈՐԴ ՇԵՐՏԷՆ (4e tranche)**

*շարք* **S** *թիւ 99,412*
*շարք* **T** *թիւ 78,009*
*շարք* **S** *թիւ 99,413*
*շարք* **D** *թիւ 52,152*

*ԾԱՆՕԹ.*— Վճարող եւ նոր արձանագրուող բաժանորդներէն անոնք որոնք չեն ուզեր իրենց անունը հրատարակել թերթին մէջ, կը ստանան համապատասխան ընկալագիր մը, նշանակուած տոմսերու թիւով եւ իրենց մասնակցութեան իրաւունքով:

## Հ. Յ. Դ.

*ՍԷՆ ԹԱՆԹՈՒԱՆԻ (Մարսէյլ) «Ընկեր Կարօ» խումբի ընկերական ժողովը այս Կիրակի երեկոյ ժամը 7ին ընկեր Ս. Գալուստեանի բնակարանին մէջ: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:*

## Ընկերական - թէյասեղան

կազմակերպուած *Հ. Յ. Դ. ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ ՎՌԱՄԵԱՆ* խումբին կողմէ իր կազմութեան 5րդ տարեդարձին առթիւ

*Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին*

6bis, Bld. Rodin, *Իսի լէ Մուլինօ*

*Ներկայ կ'ըլլան ընկերներ՝* Ս. Վրացեան, Ա. Խատիսեան, Ա. Ջամալեան, Գ. Բալայեան *եւ* Լ. Գեւոնեան:

Հաղորդ. միջոցներ — *Փորթ Վէրսայլէն եւ Փորթ Օթէօյէն առնել 32 եւ 23 թիւ հանրակառքերը եւ իջնել Կար տ'Իսի:*

## ՄԱՐԶԱԿԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ՊԱՆԵՕ - ՔԱՇԱՆԻ «ՅԱՌԱՋ'ԻՄԱՍԻՐԱՑ» ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

վաղը Շաբաթ երեկոյ ժամը 9ին, տեղւոյն մանկապարտէզին մէջ

43, Rue Mme. Curie, Bagneux (Seine)

Կը խօսի Պ. Ժ. ԵԱՂՄՈՒՐԵԱՆ

Նիւթ՝ ՄԱՐԶԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԳԱՂՈՒԹՆԵՐՈՒ ՄԷՋ

*Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները:* *Մուտքը ազատ է:*

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### Ա. ԳՈՒԼԽԱՆԴԱՆԵԱՆԻ
### «Հայ թատրոնի ընդհատումները»
*ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ*
### ԲԱԳՈՒԻ ԱՌԱՋԻՆ ԸՆԴՀԱՐՈՒՄՆԵՐԸ

*Զարդարուած՝ նկարներով:* *Գին՝ 15 ֆրանք:*

Ամերիկա, Բրիտ. կայսրութիւն եւ Եգիպտոս 20 ֆրանք:
դիմել A. GULKHANDANIAN, *ՅԱՌԱՋի* խմբագրութիւն:
*Կը ծախուի նաեւ* Խաչիկ Մկրեանի (*Լիոն*), Բենոյի *Պէյեանքուռ*, Հր. Սամուէլի (*Փարիզ*), Ն. Խաչիկեանի (*Վիէն*), Մուրատ Մուրատեանի (*Սէն Թ'Էթիէն*), Ն. Կակոսեանի (*Մարսէյլ*) եւ Ս. Թիրեաքեանի (*Լիոն*) մօտ:

## ՊԱՏԻ ՕՐԱՑՈՅՑ 365 ԹԵՐԹՈՎ
### ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ ԳՐԱՏԱՆ

**51 Rue Mr. le Prince, Paris VI** **Tél. Dan. 88 – 65**

Կողքը զարդանկարուած յայտնի արուեստագէտ ԷՏԿԱՐ ՇԱՀԻՆԻ կողմէ

*Կը պարունակէ կրօնական եւ ազգային բոլոր տօները: Ամսուան եւ օրուան անունները՝ հայերէն եւ ֆրանսերէն: Իւրաքանչիւր թերթի վրայ պատմական ծանօթութիւններ եւ օգտակար գիտելիքներ:*

ԳԻՆ 5 ՖՐԱՆՔ

20 ՖՐԱՆՔԻ ԳԻՐՔ ԳՆՈՂԻՆ ԻԲՐ ՆՈՒԷՐ ԿԸ ՏՐՈՒԻ

Շքեղ տպագրութեամբ եւ պատկերազարդ



## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

ԱՆԻԷՌ, Օր. Թ.— 140:
ՎԻԼՄՈՆՊԼԸ, Ն. Ե.— 35:
ՄԱՐՍԷՅԼ, Յ. Ե.— 140:
ՔԱՍԱՊԼԱՆՔԱ, Յար. եղբ.— 150:
ՄԻՐԱՄՈՆ, Սար.— 175:
ՍԷՆ ԼՈՒ (Մարսէյլ) Ե. Փամ.— 35:
ՌԸՆԱԺ, Ա. Թ.— 35:
ՄՈՆԹՐԷՕՅԼ, Օ. Գափ.— 35:

## ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

*ԵՈԶԿԱՏԻ եւ Շրջ. Հայր. Միութեան (Փարիզ) ընդհանուր ժողովը տեղի կ'ունենայ վաղը Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին* 131, Fbg. de Temple: *Վիէննէն եկած շրջաբերականի ընթերցում, պատգամաւորի ընտրութիւն եւ վարչական խնդիրներ:*

Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)



## ՀԱՒԱՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ ՄԻՆՉԵՒ
## 5000000 ՖՐ. ՇԱՀԵԼՈՒ
## ՄԻԱՅՆ ՏԱՍԸ ՖՐԱՆՔՈՎ

*Մասնակցեցէք*

1. ՀԱՅԿ. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԵԱՆ

Պարգեւներ.— 25 ՀԱՏ ՖՐԱՆՍ. ԱԶԳ. ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԵԱՆ ՏՈՄՍԵՐ, ՐԱՏԻՈՅԻ ԳՈՐԾԻՔ ՄԸ ԵՒ 74 ՀԱՃԵԼԻ ԵՒ ՊԻՏԱՆԻ ԱՌԱՐԿԱՆԵՐ, 2000 ՏՈՄՍԱԿԻ ՎՐԱՅ:

2.— ՀԱՅԿԱԿԱՆ ԿԱՂԱՆԴԻ ՇՔԵՂ ՀԱՆԴԷՍԻՆ

*Թատերական ներկայացում, երգ, նուագ, կաղանդի Ծառ*

*Վիճակահանութիւն եւ հանդէս տեղի կ'ունենան*

***31 Դեկտ. 1933, Կիրակի ժամը 14.30ին***

ՍԷՎՐԻ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ ԹԱՏԵՐԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

**26, Rue Troyon. Sèvres.**

*ՏՈՄՍԵՐՈՒ ՎԱՃԱՌՄԱՆ ԿԵԴՐՈՆ*

*Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԻՒՆ.* 11, Square Alboni. Paris
*Պ. Պ. ՃԷՕՀԷՐԵԱՆ.* 5, Rue du Fbg. Montmartre. Paris

ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ՁԵՐ ԳՆՈՒՄՆԵՐԸ ՎԵՐԱՊԱՀԵՑԷՔ

### Ֆրանս. Կարմիր Խաչի Փարիզի մասնաճիւղին
### ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՄԵԾ ՎԱՃԱՌՔԻՆ

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ ***ՏԻԿ. Ս. ԲԷԳԼԱՐԵԱՆԻ***

*Մանրամասնութիւնները յաջորդով*

## Ե Փ Ր Ա Տ նուագախումբ

*Եթէ կ'ուզէք ձեր հանդէսները հաճելի դարձնել, դիմեցէք «ԵՓՐԱՏ» նուագախումբին որ կը նուագէ* հայկական, եւրոպական, կովկասեան եւ արեւելեան *եղանակներ, մասնաւորապէս* Թանկօ Արժանթին:

*Նուագախումբը ունի իր մասնաւոր տարազը:*

*Խաչաձեւումի տեղի չտալու համար, ձեր կազմակերպած հանդէսի թուականէն 15 օր առաջ դիմել՝ անձամբ կամ գրաւոր, ԵՓՐԱՏ նուագախումբի ղեկավար՝ Տ. ՕՆՈՍԵԱՆի, 15, rue du Pourtour, Clamart, Seine.*

ռաջին խօսակցութիւնները կը վերաբերին տնտեսական խնդիրներու: Բուն քաղաքական հարցերը նոր պիտի քննուին:

## ՆՈՐ ԿԱՐԳԱԴՐՈՒԹԻՒՆՆԵՐ ՕՏԱՐ ԳՈՐԾԱՒՈՐՆԵՐՈՒ ՄԱՍԻՆ

Ելմտական ծրագրին քննութեան ատեն, երեսփ. ժողովը քուէարկեց յօդուած մը, որուն համաձայն երբ նահանգի մը մէջ, այս կամ այն գործին համար ֆրանսացի գործազուրկներ կան, օտար բանուոր բանեցնող գործատէրերը պարտաւոր պիտի ըլլան այդ բանուորներու աշխատավարձին հարիւրին հինգը վար դնել: Սակը պիտի բարձրանայ հարիւրին 10ի, ոչ – հաստատուն բանուորներու համար: Իսկ հարիւրին 15 պիտի գանձուի այն օտարականներէն որոնք իրենց հաշւոյն կ'աշխատին: Համայնավար երեսփոխանները բողոքեցին այս շահագործման դէմ, բայց առաջարկը քուէարկուեցաւ 14ի դէմ 458 ձայնով:

## Փարիզ եւ արուարձաններ



Յ. Հ. Դ.

ՓԱՐԻԶԻ, ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ, ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ.-ՔՈԼՈՆՊԻ, ԱՌՆՈՒՎԻԼ-ՍԱՐՍԷԼԻ, ԱԼՖՈՐՎԻԼԻ, ՔԱՇԱՆ-ՊԱՆԵԷՕԻ կոմիտէները ընդհանուր ժողովի կը հրաւիրեն իրենց շրջանի բոլոր ընկերները այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին Սօսիէթէ Սավանթի D սրահին մէջ 8, rue Danton, Métro Odéon: Կարեւոր զեկոյցներ:

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ-ՔՈԼՈՆՊԻ «Վիշապ» ենթակոմիտէի դասախօսական ժողովը տեղի կ'ունենայ այս Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին: Պէքօնի կայարանին դիմացի սրճարանին մէջ: Կը դասախօսէ ընկեր Ս. Վրացեան: Կը հրաւիրուին բոլոր ընկերներն ու համակիրները:

### Գաւառ

ԼԻՈՆԻ Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին Հ. Յ. Դ. «Զարդարեան» Գրադարանի սրահը: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ՄԱՐՍԷՅԼԻ «Քրիստափոր» խումբի ժողովը վաղը Հինգշաբթի երեկոյ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտադիր է:



## Բացառիկ հանդէս

կազմակերպուած Ֆր. Կ. Խաչի Լիոնի Մասնաճիւղին կողմէ 30 դեկտ. Շաբաթ երեկոյ Յրդ Թաղապետարանի սրահին մէջ

կը խնդրուի բոլոր կազմակերպութիւններէն նկատի ունենալ այդ թուականը:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

ՍՏԱՑԱՆՔ

ՔԼԱՄԱՌ, Յ Ն.— 105 ֆրանք:
ՆԻՍ, Շ. Թ.— 70:
ՓԱՐԻԶ (19), Օր. Պ.— 50:
ՊԼԱՆ ՄԵՆԻԼ, Մ. Բ.— 70:
ՆՈՒԱԶԻ ԼԸ ՍԷՔ, Տիկ. Է. Ղ.— 70:
ՔԼԱՄԱՌ, Պ. Զ.— 35:
ԼԻՈՆ – ՎԷԶ. Ա. Տ.— 70:
ՊՈՐՏՕ, Գործ.— 382:
ՄԱՐՍԷՅԼ, Խ. Յ.— 140:
ԿՐԸՆՈՊԼԸ, Ա. Թ.— 310:
ՄԱՐՍԷՅԼ, Գործ.— 817:
ՔԱՎԱՅԵՈՆ, Վ. Մ.— 20:
ԱՆՎԷՐՍ, Խումբ— 141,80:
ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊ, Խ. Ա.— 40:
ՓԱՐԻԶ (5), Ե. Ս.— 70:
ՓԱՐԻԶ (11), Ա. Գ.— 140:
ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊ, Գ. Յ.— 20:
ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊ, Գ. Յ.— 70:
ԷՓԵՐՆԷՅ, Խաբ.— 50:
ՊԻՅԵԱՆՔՈՒՌ, Պ. եւ Պ.— 35:
ԿՐԸՆՈՊԼԸ, Փ. Ա.— 200:
ՓԱՐԻԶ, Թ. եւ Մ.— 175:
ԻՍԻ, Յ. Հ.— 140:
ՇԱՎԻԼ, Պ. Պ.— 140:
ՓԱՐԻԶ (4), Գ. Թ.— 70:
ՎԻԼՄՈՆՊԼԸ, Ն. Ե.— 35:
ՎԻԷՆ, Ն. Խ.— 200:
ՊԱՆԵԷՕ, Լ. Տ.— 140:
ՇԱԼԷԹ, Փ. Ք.— 105:
ԼԸ ՓՈՆԹԷ, Մ. Գ.— 70:
ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕ, Խ. Ք.— 70:
ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕ, Ն. Գ.— 105:
ՄԱՐՍԷՅԼ, Ս. Պ.— 50:
ԱՆԻԷՌ, Ա. Գ.— 105:
ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊ, Յ. Ա.— 70:
ԼԱ ՍԻՕԹԱ, Ղ. Կ.— 35:
ԼԻՈՆ, Գործ.— 700:
ՍԷՆ ՇԱՄՈՆ, Սարգ.— 100:
ԿՐԸՆՈՊԼԸ, Օր. Մ.— 35:
ՍԷՆ ՔԼԷՌ, Գ. Ս.— 35:
ՕՐԼԷԱՆ, Պ. Մ.— 35:
ՄՕՆՄՕՐԱՆՍԻ, Շ. Ա.— 140:
ՇԱՎԻԼ, Հ. Տ.— 140:
ՊԻՍԷԹՐԸ, Էf.— 70:
ԻՎՐԻ, Պ. Գ.— 140:
ՍԷՆ Թ'ԷԹԻԷՆ, Գործ.— 116,60:
ՍԷՆ ՄՕՐԻՍ, Գործ.— 114,05:



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ռ. ՄԻՈՒԹԵԱՆ Փարիզի մասնաճիւղին շաբաթական դասախօսութիւնը այս Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին, Ֆլորիայի վերնայարկը:

Դասախօս Պ. Ս. Վրացեան, նիւթը Հ. Յ. Դաշնակցութիւնը: Կը հրաւիրուին համակիրներն ու վ...

Imprimerie A. DER (AGOPIAN)
17. Rue Damesme :-: PARIS (13e)
Le Gérant : H. STEPHAN

## Փարիզ եւ արուարձաններ

Յ. Հ. Դ.

ՓԱՐԻԶԻ, ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ, ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ-ՔՈԼՈՆՊԻ, ԱՌՆՈՒՎԻԼ-ՍԱՐՍԷԼԻ, ԱԼՖՈՐՎԻԼԻ, ՔԱՇԱՆ-ՊԱՆԵԷՕԻ կոմիտէները ընդհանուր ժողովի կը հրաւիրեն իրենց շրջանի բոլոր ընկերները այս կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին Սօսիէթէ Սավանթի D սրահին մէջ 8, rue Danton, Métro Odéon: կարեւոր զեկոյցներ:

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ-ՔՈԼՈՆՊԻ «Վիշապ» ենթակոմիտէի դասախօսական ժողովը տեղի կ'ունենայ վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին: Պէքօնի կայարանին դիմացի սրճարանին մէջ: Կը դասախօսէ ընկեր Ս. Վրացեան: Կը հրաւիրուին բոլոր ընկերներն ու համակիրները:

ՇԱՎԻԼԻ «Արդութեան» խումբի ժողովը այս Կիրակի երեկոյ ժամը 9ին սովորական հաւաքատեղին:

## Գաւառ

ԼԻՈՆԻ Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին Հ. Յ. Դ. «Զարդարեան» Գրադարանի սրահը: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ՄԱՐՍԷՅԼԻ «Քրիստափոր» խումբի ժողովը այսօր Հինգշաբթի երեկոյ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտադիր է:

ՇԱԼԷԹԻ «Բաբկէն-Սիւնի» խումբին ընդհ. ընկերական ժողովը այս կիրակի առաւօտ ժամը 10ին ընկ. Պաղտատեանի բնակարանին մէջ:

ՊՈՒԼՎԱՐ ՕՏՏՕի (Մարսէյլ) «Վռամեան» Ենթակոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ իր չորս խումբերու բոլոր ընկերները այս Կիրակի կէս օրէ վերջ ժամը ճիշդ 6ին Պատանեկան Միութեան նոր Գրադարանին մէջ: Կարեւոր օրակարգ:

---



17, Rue Dameame :-: PARIS (13e)
Le Gérant : H. STEPHAN Imprimerie A. DER (AGOPIAN)

Յ. Փարիզ եւ շրջակաները



Հ. Դ.

ՓԱՐԻԶԻ, ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ, ԱՆԻԷՌ-ՊՈԽԱ.-ՔՈԼՈՆՊԻ, ԱՌՆՈՒՎԻԼ-ՍԱՐՍԷԼԻ, ԱԼՖՈՐՎԻԼԻ, ՔԱՇԱՆ-ՊԱՆԵԷՕԻ կոմիտէները ընդհանուր ժողովի կը հրաւիրեն իրենց շրջանի բոլոր ընկերները վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին Սօսիէթէ Սավանթի D սրահին մէջ 8, rue Danton, Métro Odéon: Կարեւոր զեկոյցներ:

Տէր եւ Տիկին Տէյիրմէնճեան, Մարիամ Տէյիրմէնճեան, Տէր եւ Տիկին Խաչիկեան եւ զաւակը, Այրի Տիկին Սէմէրճեան եւ զաւակը՝ Ֆէպիւս, Տէր եւ Տիկին Սէմէրճեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Հօկտաննեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Փափազեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Գաւալեան եւ զաւակը (Փարիզ), Այրի Տիկին Տէյիրմէնճեան եւ զաւակունք (Պոլիս), Այրի Տիկին Միզաննեան եւ զաւակունք (Սելանիկ), խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրելի որդւոյն, եղբօր, աներձագին, զարմիկին՝

ՍՏԵՓԱՆ ՏԷՅԻՐՄԷՆՃԵԱՆԻ

դառնակսկիծ մահը՝ 22 տարեկան երիտասարդ հասակին մէջ:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այսօր, շաբաթ առաւօտ ժամը 11.30ին, Առնուվիլ լէ Կոնէսի Հայոց եկեղեցիին մէջ:

*ԾԱՆՕԹ.— Մասնաւոր մահազդ ղրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:*

ՀԱՂՈՐԴԱԿՑ. ՄԻՋՈՑ.— Կառ. տիւ Նորէն շոգեկառք առնել ժամը 8,05, 9,05 եւ 10,35:

Այրի Տիկին Ֆիլօր Եսայեան, Այրի Տիկին Նուարդ Թորոսեան եւ զաւակները՝ Գէորգ եւ Յակոբ, Տէր եւ Տիկին Աւետիս Եսայեան եւ զաւակունք (Ամերիկա), Պ. Նազարէթ Եսայեան (Սոֆիա), սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրելի ամուսնոյն, հօր, եղբօր, մեծ հօր, հօրեղբօր՝

ԿԱՐԱՊԵՏ ԵՍԱՅԵԱՆԻ

(*Կեսարացի*)

դառնակսկիծ մահը որ տեղի ունեցաւ 14 դեկտեմբերին, 48 տարեկան հասակին մէջ:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այսօր շաբաթ կէսօրէ վերջ ժամը 12.30ին իր բնակարանին մէջ, 28bis Rue Nationale, Պիյեանքուռ:

*ԾԱՆՕԹ.— Մասնաւոր մահազդ ղրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:*

**Փարիզի Գրական Ակումբ** *այսօր Շաբաթ իրիկուն, ժամը 9ին,* 131, rue Paul Berruel (*նախկին* rue Cambronne, 131) métro Vaugirard *տեղի կ'ունենայ ընթերցանութիւն հեղինակէ «Առաքել աղա» տրամի, որմէ յետոյ մտքերի փոխանակութիւն: Մուտքը ազատ է:*



ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ **ԵՓՐԱՏ** ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ

*ԻՐ ՀԱՍՏԱՏՄԱՆ 4ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻւ*

ԱՅՍՕՐ ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 9ԷՆ ՄԻՆՉԵՒ ԱՌԱՒՕՏ

SALLE LUCIENի ՇՔԵՂ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ 13, Rue d'Issy à Billancourt

կ'արտասանէ Պ. *Զ. ՂԱՐԻՊԵԱՆ*, կ'երգէ Պ. *ՍԵՊՈՒՀ ՎԱՐԴԵԱՆ*, *ԵՓՐԱՏ* նուագախումբը կը նուագէ հայկական եղանակներ, ղեկավարութեամբ Պ. *Տ. ՕՆՈՍԵԱՆի*: Հայկական կովկասեան եւ եւրոպական պարեր.

Կը ներկայացուի՝ ԵՐԿՈՒ ԽՈՒԼԵՐԸ

տեղի կ'ունենայ *ԹԱՆԿՈՅի* մրցում:

ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով: Մուտք 5 ֆրանք:

Պիւֆէն սանձնած է ծանօթ հացագործ ՍՏԵՓԱՆ ՄԱՐԳԱՐԵԱՆ որ խնամքով պատրաստած է ամէն տեսակ խմորեղէններ, *լահմէճիւն*՝ պանիրով, պաստուրմա, եւլն.:

ՀԱՂՈՐԴԱԿՑ. ՄԻՋ.— Փորթ Վէրսայլէն առնել հանրակառք 23 եւ իջնել Point du Jour, թիւ 32 իջնել Place Nationale:

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

ՊՕՐԸՔԵՌ, Հ. Ա.— 35:

ԹՈՒԼՈՆ, Թ. Տ.— 70:

ՆԻՍ, Վ. Մ.— 100:

ՆԻՍ, Հ. Տ.— 140:

*ՌՈՏՈՍԹՕՅԻ* Պ. Կարպիս Ս. Փափազեանէ (*կը կարծուի Մարսէյլ ըլլալ*) *կը խնդրուի իր հասցէն իմացնել կարօ Ղազարոսեանի*՝

Garo Ghazarossian, Philippople (Bulgarie).

ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

**Տեղի կ'ունենայ այսօր Շաբաթ երեկոյ, ժամը 9ին**

**Cercle Militaire**ի ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ **2, Ave. PORTALIS (Place St. Augustin)**

ԲԱՑԱՌԻԿ ԱՐՏՕՆՈՒԹԵԱՄԲ ԶՕՐ. ԿՈՒՌՈՅԻ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ **ՏԻԿ. Ն. ԳԱՓԱՄԱՃԵԱՆԻ**

ԵՒ ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ **Պ. Պ. ԷՍՄԷՐԵԱՆԻ**

*Գեղարուեստական խնամեալ բաժին: Անակնկալներ եւ աթրաքսիոններ. Թօմպօլա.— Կարգադիր Յանձնախումբը ոչինչ խնայած է իր ամբողջ փայլը տալու համար այս հանդէսին, ուր պիտի ծափահարուի ի միջի այլոց* **Mlle DUBERNARD (de l'Opéra)**: *Յուցադրութիւն երկու փոքրիկ պօքսէրնե. րու կողմէ (մանրանկար մը աշխարհի ախոյեանութեան):*

*Նուագախումբ* **Cercle Militaire**ի: *Յունական եւ Սպանիական պարեր:*

*Ճոխ եւ դիւրամատչելի պիւֆէ:*

ՄՈՒՏՔ 25 ՖՐԱՆՔ



Ա. ԳՄԲԷԹԵԱՆ

(« *Լէպլէպիճի* »ի դերին մէջ)

ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԹԱՏՐՈՆԻ

ՄԵԾ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ—ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

**25 Դեկտեմբեր, Շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ լոյս**

ՍՕՍԻԷԹԷ ՍԱՎԱՆԹԻ ՄԷՋ, 8, rue Danton. Métro; Odéon

*կը ներկայացուի ՎԱՀՐԱՄ ՍՎԱՃԵԱՆի քրքջալիր քոմէտիները*

1.— ՑԱՒԻՏԵՆԱԿԱՆ ՈՒՍԱՆՈՂՆԵՐ

2.— ԻԳՕՍԻՓԷՆՏԷ ՇՈԳԵՆԱՒՈՎ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ

ՆՈՒԱԳ, ԵՐԳ, ՔԼԱՍԻՔ ՊԱՐ

***ԼԷՊԼԷՊԻՃԻ ՀՕՐ-ՀՕՐ ԱՂԱ*** ԵՒ ***ՕՄԱՐ ԽԱՅԵԱՄ*** ԳՄԲԷԹԵԱՆԻ ԿՈՂՄԷ

*կը մասնակցին՝* Մատլէն Տիւռէ (*Օտէօնի թատրոնէն*), Տիկին Լաթիֆեան, Օր. Փիւլպիւլեան, Օր. Մաքտօնալտ (*Շաթըլէի թատրոնէն*), Օր. ճամպազ: Պ. Պ. Վ. Սվաճեան, Լեւոն - Յարութ (*Աթըլիէի թատրոնէն*), Քէչէճեան, Ա. Գմբէթեան եւ Արման Կոթիկեան:

*ԿԷՍ ԳԻՇԵՐԻՆ ԿԸ ՍԿՍԻՆ ՊԱՐԵՐԸ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՍԱՆՏՐՈՍԵԱՆԻ ՅԱՅՏՆԻ ՃԱԶԻՆ*

*ՃՈԽ ԵՒ ԱԺԱՆ ՊԻՒՖԷ* *ԳՕԹԻՅԵՕՆ* *ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ*

Տոմսերը կը ծախուին սովորական տեղերը:

ՄՈՒՏՔ 7.50, 10 15, ԵՒ 25 ՖՐԱՆՔ



Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17. Rue Damesme :-: PARIS (13e)

իրարու քիչ շատ նման: Գալով դրացիներուն,—«ոչ տեսանք, ոչ լսեցինք»: ի՞նչպէս ըլլել գործին մէջէն:

Հազուադէպ են այսպիսի պատմութիւններ: Իսկ եթէ ծանր դէպքեր կը պատահին, շատ աւելի ծանր թերեւս, որ գաղտնի կը մնան, այդ ալ չպիտի գիտնանք, չպիտի իմանանք երբեք, որովհետեւ չպիտի ըսեն մեզի:

Արեւելքցին չի սիրեր, որ եւրոպացին զբաղի իր ներքին կոււններով:

ՇԱՔԷ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

եւ

ՅԱԿՈԲ ՅԱԿՈԲԵԱՆ

*Ամուսնացած*

Փարիզ 17 դեկտ. 1933

## ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

*Զ. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ Փարիզի մասնաճիւղին շաբաթական դասախօսութիւնը վաղը Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլորիայի վերնայարկը: Կըղասա խօսէ Տոքթ. Շ. Այվազեան Նիւթ՝* Մանուկներու առողջապահութիւնը: *Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները:*

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*ՇԱՎԻՂԻ Արզուեթեան խումբը իր ցաւակցութիւնը կը յայտնէ ընկեր Տոքթ. Դաւթեանի, ընկերուհիներ՝ Տիկին Սաթենիկ Դաւթեանի եւ Պերճուհի Բարսեղեանի, իրենց մօր եւ զոքանչին դառնաղէտ մահուան առթիւ:*

Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)

## Հ. Յ. Դ.

*ՌՈՍՏՈՄ խումբի ժողովը այս Ուրբաթ երեկոյ ժամը 9ին սովորական հաւաքատեղին:*

## Հ. Յ. Դ.

*ՌՈՍՏՈՄ խումբի ժողովը վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 9ին սովորական հաւաքատեղին։*

*ՇԱՎԻԼԻ Արղութեան խումբի ժողովը այս Կիրակի երեկոյ ժամը 9ին, սովորական հաւաքատեղին։*

*ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ Վռամեան խումբի ժողովը վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 8ին Ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։*

**Փարիզի Գրական Ակումբ** *այս Շաբաթ իրիկուն, ժամը 9ին,* 131, rue Paul Berruel (*նախկին* rue Cambronne, 131) métro Vaugirard *տեղի կ'ունենայ*

1.— *Ընթերցում* Պ. Նշան Պէշիկթաշլեանի *կողմէ ծաղրանկարներ* Պ. Պ. Ա. Խատիսեան, Շ. Նարդունի եւ Հր. Ալեանաք։

2.— *Նոր Վարչութեան ընտրութիւն։*

*Այս առթիւ կը խնդրուի Ակումբի բոլոր անդամներու ներկայութիւնը։ Մուտքը ազատ է։*

---

ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ՁԵՐ ԳՆՈՒՄՆԵՐԸ ՎԵՐԱՊԱՀԵՑԷՔ

### Ֆրանս. Կարմիր Խաչի Փարիզի մասնաճիւղի

### ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՄԵԾ ՎԱՃԱՌՔԻՆ

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ ***ՏԻԿ. Մ. ԲԷԳԼԱՐԵԱՆԻ***

ՇԱԲԱԹ 23, ԿԻՐԱԿԻ 24, ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 25 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1933

ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 2ԷՆ 7

***Salle Démocratie* ՄԷՋ, *38, Boulevard Raspail, Paris***

*Կը վաճառուին կանացի եւ տղամարդու առականեր, երախաներու հագուստներ, խաղալիքներ, ամէն տեսակի նուէրցու իրեր, նպարեղէններ, թարմ եւ չոր պտուղներ եւայլն. ընթացիկ գիներով։ ճոխ պիւֆէ։*

Հաղորդակ միջոց.— *Métro: Sèvres-Babylone. Autobus: AG. BG. S. U. Ubis. X. AE. CM. CB. BC.*

---

### ԵՐԵԿՈՅԹ_ՊԱՐԱՀԱՆԴԷՍ_ՏՕՆԱԾԱՌ

***ՍԵԲԱՍՏԻՈՅ «ԱՅԳ» ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ***

ի նպաստ Նոր Սեբաստիոյ մէջ շինուելիք Արամեան «*ԱՅԳ*» վարժարանին

***Այս Կիրակի երեկոյ ժամը 9էն մինչեւ առաւօտ***

Hôtel de RUSSIE*ի սրահին մէջ* 2 et 4, rue des Batignolles et 34 Bld. Batignolles

Métro: Place Clichy

Գեղարուեստական ճոխ բաժին։ կը մասնակցի ԿՈՄԻՏԱՍ երգչախումբը *Պ.ԱՐԱՄ ՉԱՐԸՔ* (վտարանդի) *կ'երգէ* «Օմար խայեամ»էն։ *Անակնկալներ։* եւրոպական պարեր, ճազ, օրքէսթրը՝ TIPICA

*Պիւֆէ դիւրամատչելի գիներով։*

Մուտք՝ այրերու 10 ֆրանք, կիներու 8 ֆրանք։

*Տոմսերը կը ծախուին դերձակ* Գարաեան *5, rue Mignon, Փարիզ (6)։*

Հրանտ-Սամուէլ Գրատուն *51, Mr. le Prince Փարիզ (6)։*

---

### ՏԱՐԵԿԱՆ ՇՔԵՂ ԵՐԵԿՈՅԹ_ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ՖՐ. Կ. ԽԱՉԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

*Հովանաւորութեամբ առաջնորդ Գ. ԵՊԻՍԿ. ՊԱԼԱՔԵԱՆԻ*

Այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին

Գօլիզէի շքեղ սրահներուն մէջ, **21 Bld. Dagommier**

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին դերասան* Ուզունեան, Տիկ. Հայկանոյշ Նիֆօլինի, *ջութակահարներ* Պ. Պ. Չէօրէքճեան եւ Փափազեան։

*Կէս գիշերէն վերջ եւրոպական եւ հայկական պարեր, ճոխ պիւֆէ։*

---



---

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ Զաւարեան Կոմիտէն իր ցաւակցութիւնը կը յայտնէ ընկեր Տոքթ. Դաւթեանի, ընկերուհի Տիկ. Սաթենիկ Դաւթեանի եւ ընկերուհի Պերճուհի Բարսեղեանի իրենց մօր եւ զոքանչին մահուան առթիւ։*

---

*ՄԱՐՍԷՅԼԻ Իշխան Ենթակոմիտէն ու ընկերները իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն ընկեր Արամ Հիւսեանի եւ ընկեր Վահան Հիւսեանի (Տէսին) իրենց հօրեղբօր աղջկան՝ Հրանուշ Հիւսեանի դառնակսկիծ մահուան առթիւ։*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՑՈՒՇԱՏԵՏՐ

*Զ. Ո. ՄԻՐԻԹԵԱՆ Փարիզի մասնաճիւղին շաբաթական դասախօսութիւնը այսօր Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլորիայի վերնայարկը։ Կըդասախօսէ Տոքթ. Շ. Այվազեան նիւթ՝* Մանուկներու առողջապահութիւնը։ *Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։*

---

**Le Gérant : H. STEPHAN**

**Imprimerie A. DER (AGOPIAN)**

**17, Rue Damesme :-: PARIS (13e)**



---



ԼԵՒՈՆ-ՑԱՐՈՒԹ

(Աթըլիէի թատրոնէն)

ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԹԱՏՐՈՆԻ

## ՄԵԾ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

*Այս Շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ լոյս*

ՍՈՍԻԷԹԷ ՍԱՎԱՆԹԻ ՄԷՋ, 8, rue Danton. Métro; Odéon

*Կը ներկայացուի ՎԱՀՐԱՄ ՍՎԱՃԵԱՆԻ քրքջալիր քոմէտիները*

**1.— ՑԱՒԻՏԵՆԱԿԱՆ ՈՒՍԱՆՈՂՆԵՐ**

**2.— ԻԳՕՍԻՓԷՆՏԷ ՇՈԳԵՆԱՒՈՎ**

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ

ՆՈՒԱԳ, ԵՐԳ, ՔԼԱՍԻՔ ՊԱՐ

***ԼԷՊԼԷՊԻՃԻ ՀՕՐ-ՀՕՐ ԱՂԱ*** ԵՒ ***ՕՄԱՐ ԽԱՅԵԱՄ*** ԳՄԲԷԹԵԱՆԻ ԿՈՂՄԷ

*Կը մասնակցին՝* Մատլէն Տիւռէ (*Օտէոնի թատրոնէն*), Տիկին Լաթիֆեան, Օր. Գիւլպիւլեան, Օր. Մաքտօնալտ (*Շաթըլէի թատրոնէն*), Օր. Ճամպազ։ Պ. Պ. Վ. Սվաճեան, Լեւոն-Ցարութ (*Աթըլիէի թատրոնէն*), Քէչէճեան, Ա. Գմբէթեան եւ Արման Կոթիկեան։

*ԿԷՍ ԳԻՇԵՐԻՆ ԿԸ ՍԿՍԻՆ ՊԱՐԵՐԸ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ* «GARIOS» Orchestra Typica *ՃԱԶԻՆ*

*ՃՈԽ ԵՒ ԱԺԱՆ ՊԻՒՖԷ* *ԳՕԹԻՅԵՕՆ* *ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ*

Տոմսերը կը ծախուին սովորական տեղերը։

ՄՈՒՏՔ 7.50, 10 15, ԵՒ 25 ՖՐԱՆՔ

---

## Հ. Յ. Դ.

*ՌՈՍՏՈՄ խումբի ժողովը այսօր Ուրբաթ երեկոյ ժամը 9ին սովորական հաւաքատեղին։*

*ՇԱՎԻԼԻ Արղութեան խումբի ժողովը այս Կիրակի երեկոյ ժամը 9ին, սովորական հաւաքատեղին։*

*ԻՍԻ ԼԻ ՄՈՒԼԻՆՈՅԻ Վռամեան խումբի ժողովը այսօր Ուրբաթ երեկոյ ժամը 8ին Ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։*

*ՎԱԼԱՆՍԻ Քրիստափոր Ենթակոմիտէի հերթական դասախօսական ժողովը այս Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին, Բաֆէ տը լ'Էսթի վերնայարկը։ Նիւթ՝ ի՞նչու դաշնակցական եղած ենք։ Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։*

---



Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme :-: PARIS (13e)

# Հ. Յ. Դ.

**ՓԱՐԻԶԻ «ԵԳԻՊՏԱՑԻ» ԿՈՄԻՏԷՆ** *ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին* 32, Ave. des Gobelinsի սրճարանին վերնայարկը: Ներկայանալ անդամատետրով: Ներկայ կ'ըլլայ ընկեր ԱՇՈՏ ԽՍԱՀԱԿԵԱՆ:

*ՊԱՆԻԷՕ-ՊԱՇԱՆԻ «Արծիւ» ենթակոմիտէի ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ Յունվար 2, Երեքշաբթի երեկոյ, ժամը 8.30ին, Ալթունեանի բնակարանին մէջ՝* 17, Rue Ampère, CACHAN.

*ԻՍԻԻ «Զաւարեան» կոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս Շաբաթ երեկոյ, ժամը 8.30ին, Ակումբին մէջ: Կը խօսի՝ Ընկ. Աշոտ Իսահակեան:*

*ԻՍԻԻ «Մուրատ» խումբի ժողովը վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին Ակումբին մէջ:*

*ԱՌՆՈՒՎԻԼ-ԼԸ-ԿՕՆԷՍԻ «Վարդան» կոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին, ծանօթ հաւաքատեղին: Կը խօսի՝ Ընկ. Աշոտ Իսահակեան:*

*Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ «Ռոստոմ» ենթակոմիտէի ընդհ. ընկերական ժողովը վաղը, Ուրբաթ երեկոյ, ժամը ճիշտ 8.30ին, սովորական հաւաքատեղին:*

*Հ. Յ. Դ. ԼԻՕՆԻ Կոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները վաղը Ուրբաթ երեկոյ, ժամը 8.30ին,* 204, Rue Garibaldi, chez Peronnet *սրճարանի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ և պարտաւորիչ ներկայութիւն:*

*ՎԻԷՆԻ Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ* Քրիստափոր *խումբի ընկերները այսօր Հինգշաբթի երեկոյ ժամը ճիշդ 8ին «Խաժակ» Ակումբին մէջ:*

Ապառաժ *խումբի ընկերները վաղը Ուրբաթ երեկոյ ժամը ճիշտ 8ին սովորական հաւաքատեղին: Խիստ կարեւոր օրակարգ: Ներկայանալ անդամատետրով: Ներկայ կ'ըլլայ ԿՈՄԻՏԷԻ ներկայացուցիչը:*

---

## Ընկերահամախմբական թէյասեղան

կազմակերպուած Հ. Յ. Դ. ԿՐԸՆՈՊԼԻ ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻՆ ԿՈՂՄԷ

ԱՅՍ ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 8.30ին Salle des Fêtesի ՄԷՋ

կը խօսի ընկեր **Ա. ԽԱՏԻՍԵԱՆ**

ներկայ կ'ըլլան տեղւոյն ընկերվարականները, *Տիկ. ԼԱՓԵՋ* եւ *Պ. ԿՐՕԼ*

*Կը նուագէ Տէսինի փանփառը:*

*Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:*

---

## ԱՄԱՆՈՐԻ ՀԱՆԴԷՍ ԵՒ ՏՕՆԱԾԱՌ

*կազմակերպուած՝ ՖՐ. Հ. Կ. ԽԱՉԻ ՎԻԷՆԻ Մ.ՃԻՒՂԻ ԴՊՐՈՑԻ ԿՈՂՄԷ*

*Այս Շաբաթ երեկոյ ժամը 8ին Ռ. Ա. Կ. սրահին մէջ*

*Մանկական պարեր, մենախօսութիւն, խմբերգ եւ մանկական ներկայացումներ դպրոցի փոքրիկներու կողմէ:*

---

## Հրապարակային բանախօսութիւն

կազմակերպուած *ՏԷՍԻՆԻ ԿՈՄԻՏԷԻՆ ԿՈՂՄԷ*

Այս կիրակի կէս օրէ վերջ *ժամը 2.30ին Հ. Յ. Դ. ՏԱՆ* մէջ

*կը խօսի՝ ընկեր* **Գ. ԲԱԼԱՅԵԱՆ**

գեղարուեստական ճոխ բաժին մասնակցութեամբ վասպուրական *«Արծիւ»* փանփառին, ղեկավարութեամբ ընկ. Ա. Մելքոնեանի:

երեկոյեան ժամը 7էն մինչեւ լոյս ընկեր-համակրական խնջոյք եւ տօնածառ:

---

## Բազմանի հանդէս եւ տօնածառ

*ՖՐԱՆՍԱՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ԼԻՕՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ*

(Նուէրներ անխտիր բոլոր հայ մանուկներու)

Այս շաբաթ երեկոյ *ժամը 8.30ին*

երրորդ թաղապետարանի սրահին մէջ

*Հանդէսէն վերջ՝ ՃԱՆԿԻՕԶԵԱՆԻ ճաշարանին մէջ,* 202, rue Boileau

*Թէյասեղան, երեկոյթ-պարահանդէս, երգ, խմբերգ, նուագ, ճառ՝ ղեկավարութեամբ փոքրիկն Պետոյի (6 տարեկան) իր Pierro ճազով:*

Մուտք 1 ֆրանք:

---

## Պ ԱՐԱՀԱՆԴԷՍ

ՖՐԱՆՍԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ՀԱՅ ՆԱԽԿԻՆ ԿԱՄԱՒՈՐՆԵՐՈՒ ԿՈՂՄԷ

30 Դեկտեմբեր Շաբաթ երեկոյ ժամը 9.30ին

**Cercle National des Armées de Terre, de Mer et de l'Air**ի շքեղ սրահներուն մէջ

**2, Ave. Portalis (Place St. Augustin)** **Métro St. Augustin**

*Բարձր հովանաւորութեամբ՝* **MARECHAL PETAIN**ի

*Գեղարուեստական ճոխ բաժին: Երկու օրքէսթր, քօթիյոն, աթրաքսիոն: Ճոխ պիւֆէ:*

*Սմոքինկ կամ սեւ հագուստ պարտաւորիչ*

*ՄՈՒՏՔ՝* 10 *եւ* 20 *ՖՐԱՆՔ:*

---

## ԿԱՂԱՆԴԻ ՀԱՆԴԷՍ

*ՎԷՆՍԷՆԻ ԵՒ ՇՐՋԱՆԻ ՀԱՅ ՓՈՔՐԻԿՆԵՐՈՒ*

*ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿ. ՎԷՆՍԷՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ*

*31* դեկտ. կիրակի կէս օրէ վերջ *ժամը 2.30ին* մանկապարտէզի սրահին մէջ

*1,* rue du Midi (*Place de la Mairie*) վէնսէն սրճարանի Ա. յարկը

*Խմբերգ, արտասանութիւն եւ մենախօսութիւններ աշակերտներու կողմէ:*

կը ներկայացուի *«ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ»:*

*Կաղանդ Պապան պիտի բաժնէ սիրուն նուէրներ:*

կը հրաւիրուին փափաքողները: Մուտքը ազատ է:

---

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Գրիգոր Գազանճեան, Այրի Տիկին Փրլանթին Շահպազեան եւ պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց սրոնք անձամբ, գրաւոր և ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին Տիկ. Մառի Գազանճեանի գառնաղէտ մահուան առթիւ:


Le Gérant: H. STEPHAN

17, Rue Damesme, PARIS (13e)

Imprimerie A. DER (AGOPIAN)